*Aghandavorakan sharzhumnere" Hayastanum e"st mijnadari hay ev o'tar heghinakneri (IV-V dd.) [Heretical Movements in Armenia according to Medieval Armenian and Foreign Authors (4th-5th Centuries)]*, by Hratch Bartikyan, from *Lraber hasarakakan gitut'yunneri [Bulletin of Social Sciences]* (Erevan, Armenia) 10(1984), pp. 83-93, in 11 pdf pages.

# ԱՂԱՆԴԱՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԸՍՏ ՄԻՋՆԱԴԱՐԻ ՀԱՅ ԵՎ ՕՏԱՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻ (IV—V դդ.)

ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆ

*Քրիստոնեությունը ծագեց մ. թ. I դարում, Հռոմեական կայսրության արևելյան նահանգներում, որպես ճնշված դասակարգերի բողոք՝ ընդդեմ ստրկատիրական պետության։ Մ. թ. առաջին երեք դարերը նոր հանդես եկած քրիստոնեական կրոնի և հեթանոսության պայքարի ժամանակաշրջան էր։ Ծագելով որպես ճնշվածների գաղափարախոսություն, քրիստոնեությունը ժամանակի ընթացքում փոխում է իր էությունը և աստիճանաբար հանդես գալիս տիրող կարգերի հետ հաշտվելու կոչով։ Նոր կրոնի հետ միասին հանդես են գալիս նաև նրա վարդապետության հիմնական ուղղությունից այս կամ այն չափով շեղվող հոսանքներ։ Դառնալով միջազգային կրոն, քրիստոնեությունը, բնականաբար, չէր կարող մի կուռ ամբողջականություն ներկայացնել։ Յուրաքանչյուր ժողովուրդ ու ազգություն, ընդունելով քրիստոնեությունը, նրա մեջ էր ներարկում իր աշխարհայեցողությունը, ավանդույթները, ապա և յուրովի մեկնաբանում նոր կրոնի գաղափարներն ու դրույթները։ Այսպիսով, նույն կրոնի մեջ առաջացան տարբեր հոսանքներ, որոնք հետագայում պաշտոնական եկեղեցու կողմից որակվեցին որպես հերձվածներ։ Քանի դեռ քրիստոնեությունը պետական կրոն չէր հռչակվել, այդ հերձվածների և համընդհանուր եկեղեցու, ինչպես և այդ տարբեր հերձվածների միջև գնացող հակամարտությունն ու պայքարը, որպես կանոն, կրում էր գաղափարների պայքարի բնույթ։ Բայց երբ քրիստոնեությունը դարձավ պետական կրոն, հերձվածների պայքարն էլ, չդադարելով լինել գաղափարների պայքար, ստացավ ժողովրդական զանգվածների սոցիալական բողոքի և տարբեր դասակարգերի ու դասերի շահերի համար մղվող պայքարի նշանակություն։ Աստվածաբանական նուրբ բանավեճերի ետևում սքողված էին դասակարգերի շոշափելի շահերը։ «Միջին դարերն,— գրում է Ֆ. Էնգելսը,— աստվածաբանությանը միացրին ու նրա ենթաբաժինները դարձրին իդեոլոգիայի բոլոր այլ ձևերը՝ փիլիսոփայությունը, քաղաքականությունը, իրավաբանությունը։ Սրա հետևանքով հասարակական և քաղաքական ամեն մի շարժում հարկադրված էր կրոնական ձև ընդունելու։ Մասսաների զգացմունքները սնվեցին բացառապես կրոնական կերակրով. այդ պատճառով, փոթորկալի շարժում առաջացնելու համար անհրաժեշտ էր, որ այդ մասսաների սեփական շահերը նրանց ներկայացվեին կրոնական հագուստով»[1]։*

*Վաղ քրիստոնեության ժամանակաշրջանում (I—III դդ.) աղանդավորական շարժումները հայտնի են* **գնոստիկական** *անվան տակ[2]։ Գնոստիկականությունը փիլիսոփայական և կրոնական մի մեծ շարժում էր, որ ծագելով քրիստոնեության առաջացման նախօրեին, մուտք գործեց այդ կրոնի մեջ որ-*

---

[1] *Ֆ. Էնգելս, Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, Երևան, 1950, էջ 512)։*

[2] *Գնոստիկականության վերաբերյալ տե՛ս* А. Б. Ранович, О раннем христианстве, М., 1959; Ю. П. Францев, У истоков религии и свободолюбия, М.—Л., 1959; J. Doresse, Les Livres secrets des gnostiques d'Egypte, Paris, 1958; Я. А. Ленцман, Происхождение христианства, М. 1960; *Ե. Գ. Տեր-Մինասյան, Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Երևան, 1968։*

պես քրիստոնեական հերձված և իր գոյությունը պահպանեց մինչև VI դարը։ Նախաքրիստոնեական գնոստիկականության հիմքում ընկած էին տարբեր ժողովուրդների աստվածաբանական, կոսմոգոնիական և մարդաբանական գաղափարները, պարսկական աստվածաբանական դուալիզմը, խալդեբի աստրոլոգիան, նեոպլատոնական փիլիսոփայությունը և մովսիսականությունը։ Քրիստոնեական գնոստիկականության կենտրոնը Ասորիքն էր, իսկ վարդապետության ձևավորողը՝ II դ. կեսերից առաջ ապրած Սատորնիլոսը։

Գնոստիկականությունը ընդունում էր հոգեկան նախասկզբի անճանաչելիությունը, որը հակադրում էր նյութականին՝ «չարի» աղբյուրին։ Այդ վարդապետության համաձայն մարդու հոգին բանտարկված է աշխարհի բանտում, պարփակված նյութի խավարի մեջ։ Սակայն նա սկիզբ է առել միանգամայն տարբեր տեղում, հավերժական մի աշխարհում, մի ուրիշ աստծո լուսավոր բնակատեղիում, աստված, որի մասին երկրային աշխարհը և նրա կառավարողները գաղափար չունեն։ Հոգին այս Անծանոթ աստծո իսկական սուբստանցիայի մասն է։ Բայց նյութական աշխարհում նա կորցրել է իր ինքնության գիտակցությունը։ Աշխարհը մթագնել է նրան իր «աղմուկով», ապականել իր «թույնով», «ընդարմացրել» այն և «քնացրել», որպեսզի հոգին մոռանա, թե ինչպես է ինքն առաջացել։ Միայն գնոսիսը կարող է զարթնեցնել հոգին, իմացությունն այն մասին, որ նա ի վերուստ է գալիս և իրականում հանդիսանում է պարզապես հոգու ծագման վերակենդանացնող հուշը միայն։ Անծանոթ աստվածը երկիր է գալիս Փրկչի անձի մեջ։ Նա անցնում է մոլորակների շրջանների միջով և հոգուն բերում իմացությունը, թե ինքը՝ հոգին, մասն է կազմում իր՝ Անծանոթ աստծո սուբստանցիայի, և այդ ձևով ինքն ազատագրում իրեն[3]։ Նախասկզբի այդ իմացությունը (գնոսիսը) ձեռք է բերվում «հայտնության» միջոցով և մարդուն ցույց տալիս «փրկության» ուղին։

Քրիստոնեության տարածման առաջին դարերում գնոստիկյան աղանդները բազմաթիվ էին, և որպես կանոն նրանցից յուրաքանչյուրը կրում էր իր վարդապետողի, աղանդապետի անունը։ Հայտնի են Սատորնիլոսի, Մենանդրոսի, Բասիլիդեսի, Վալենտինոսի և այլոց անունները կրող աղանդները կամ դպրոցները, որոնք հիմնական հարցերում համերաշխ լինելով միմյանց, տարբերվում էին մանրամասների մեջ։ Գնոստիկյան ուսմունքը ժամանակի ընթացքում մոտենում է քրիստոնեությանը. այդ գործում կարևոր դեր են խաղացել Մարկիոնը[4], Տատիանոսը, Բարդածանը և ուրիշներ։

Գնոստիկյան գաղափարները նոր կազմավորվող քրիստոնեական եկեղեցու համար լուրջ վտանգ էին ներկայացնում, հատկապես այն պատճառով, որ դրանք խախտում էին աստված-մարդու (Քրիստոսի) մասին ավետարանական ուսմունքը։ Բացի այդ, աղանդավորների պարագլուխները, զգալի քանակությամբ գրականություն ստեղծելով, իրենց ուսմունքը լայնորեն տարածում էին քրիստոնեական համայնքների մեջ։ Եկեղեցին համառ պայքար սկսեց գնոստիկյան աղանդավորների դեմ, հրապարակ հանելով նրանց գաղափարների դեմ ուղղված բազմաժանր ու ծավալուն գրականություն, որտեղից էլ մենք հիմնականում իմանում ենք գնոստիկյանների վարդապետության մասին, քանզի իրենց՝ աղանդավորների ստեղծած գրականությունը ոչնչացվեց եկե-

---

[3] Milan Loos, Dualist Heresy in the Middle Ages, Praha, 1974, p. 21—22.

[4] Եզնիկ Կողբացին իր «Եղծ աղանդոց» գրքում Մարկիոնի ուսմունքին նվիրել է առանձին գլուխ՝ «Եղծ աղանդոյն Մարկիոնի» վերնագրով։ Դա գուցե ապացույց է այն բանի, որ մարկիոնությունը տարածված էր նաև Հայաստանում։ Այս մտքի օգտին է վկայում նաև Մովսես Խորենացու պատմածն այն մասին, որ Եդեսիայի Բարդածան պատմագիրը (II դ.) «...բազում ասացուած արար ընդդէմ աղանդոյն մարկիոնացւոց և բաշխից և կրոց պաշտաման, զոր ի մերում աշխարհիս» («Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1913, Բ, 66)։ Հմմտ. Կ. Տեր-Մկրտչյան, Պավլիկյանք Բյուզանդական կայսրության մեջ և մերձավոր հերձվածային երևույթներ Հայաստանի մեջ, Երուսաղեմ, 1938, էջ 61։

ղեցու կողմից[5]։ Երբ քրիստոնեությունը դարձավ պետական կրոն, գնոստիկյան աղանդավորների դեմ մղվող պայքարը գլխավորեց պետությունը, գործի դնելով ոչ միայն գրիչը, այլև սուրը, օրենսդրությունը։

Գնոստիկական աղանդները, եթե ոչ այն չափով, ինչ Ասորիքում, Եգիպտոսում, Հռոմեական կայսրության սահմաններում, հետևորդներ ունեին նաև Հայաստանում, բայց նրանց ազդեցությունն այստեղ անտարակույս չնչին էր. Նամանավանդ, որ I, II և III դարերում, երբ ծաղկում էր գնոստիկյան ուսմունքը, Հայաստանում քրիստոնեական վարդապետության հետևորդները դեռևս սակավաթիվ էին։ Այդ աղանդները Հայաստան մուտք գործեցին հետագայում՝ IV—V դարերում։ Հիշատակելի են բորբորիտների և մծղնյանների աղանդները։ Տարածված էր նաև եվստաթիոսականների, Սեբաստիայի հայազգի եպիսկոպոս Եվստաթիոսի անվան հետ կապված աղանդը, որն իր վարդապետության մեջ ներառել էր գնոստիկյան առանձին գաղափարներ։ Այդ շարժումը որոշ շրջանում հանդես եկավ մծղնյանների համագործակցությամբ։ Եվստաթիոսականների աղանդը կապված էր այդ ժամանակներում ծավալված այսպես կոչված անապատականների շարժման հետ, երբ ճնշվող դասակարգերին պատկանող առանձին անդամներ, նախ և առաջ ստրուկները և քաղաքի ու գյուղի «ճնշվածներն ու հարստահարվածները» սոցիալական կեղեքումներից փրկվելու նպատակով ապականած աշխարհից փախչում էին անմարդաբնակ անապատներ։

Աղբյուրներից հայտնի է, որ վերոհիշյալ Եվստաթիոս եպիսկոպոսի շարժումը ծավալվեց Փոքր Հայքում՝ IV դարի 60—70-ական թվականներին[6]։ Այն հանդես եկավ արիոսականության և «ուղղափառության» գաղափարական պայքարի ժամանակաշրջանում։ Աղանդապետի մասին եկեղեցական պատմիչ Սոզոմենոսը գրում է. «Հայերի, պափլագոնացիների և մերձպոնտոսյան բնակիչների մեջ վանական կյանքի սկիզբը և այդ մասին ուսմունքը, թե ինչը կարելի է ուտել և ինչը ոչ, ինչպիսի հանդերձներ կարելի է հագնել, ասում են դրեց Հայաստանի Սեբաստիա (քաղաքի) եպիսկոպոս Եվստաթիոսը։ Նա եղավ ուղիղ բարքերի և կենցաղավարության հիմնադիրը, այնպես որ ոմանք կարծում են, որ Բարսեղ Կեսարացուն վերագրվող Ճգնավորական գիրքը այս Եվստաթիոսի հեղինակությունն է»[7]։ Եվստաթիոսականների պատկերացմամբ գոյություն ունի երկու աստված՝ Մեծ աստվածը, որ շոշափելի, նյութական աշխարհի հետ ոչ մի առնչություն չունի, և Փոքր աստվածը՝ այս աշխարհի և մարդկանց արարիչը։ Աղանդավորները, ինչպես մյուս անապատականները, գտնում էին, որ, զսպելով մարմնական պահանջները և տանջելով մարմինը, հնարավոր է առանց եկեղեցու միջնորդության աղոթքը աստծուն լսելի դարձնել։ Նրանք սրբերին համարում էին սոսկ արդար մարդիկ և մերժում էին նրանց պաշտամունքը։ Իրենց առօրյա կյանքում եվստաթիոսականները գործում էին մծղնյանների համագործակցությամբ։ Հայտնի է, որ, երբ Մելիտենեի եպիսկոպոս Ջետորիոսը սկսեց մծղնյանների հալածանքները, նրանք փախուստի դիմելով, ապաստան գտան Եվստաթիոսի և նրա հետևորդների մոտ[8]։ Եվստաթիոսականների և մծղնյանների դաշինքը նպաստում է աղանդավորների շարժ-

---

[5] 1945 թ. Վերին Եգիպտոսի Խենոբոսկիոն գյուղում հայտնաբերվեց III դարի գնոստիկյան ձեռագրերի մի ամբողջ ժողովածու, որի մասին տե՛ս H.-C. Puech, Les nouveaux écrits gnostiques découverts en Haute-Egypte. In: Coptic Studies in Honor of Walter Ewing Crum, Boston, Mass., 1950, p. 91—154; J. Doresse, The Secret Books of the Egyptian Gnostics, London, 1960.

[6] Շարժման մասին մանրամասն տե՛ս Լ. Խաչիկյան, Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից (IV դար), Երևան, 1951, էջ 20 և հտ.։

[7] Sozomenus, Kirchengeschichte, herausgegeben... von Joseph Bidez, Berlin. 1960, S. 123 (III, 14, 31).

[8] Լ. Խաչիկյան, Նշվ. աշխ., էջ 33—34։

ման ուժեղացմանը։ Նրանք որոշակի հաջողությունների են հասնում «ուղղափառ» հոգևորականության դեմ մղվող պայքարում։

Եվստաթիոսականների դեմ հալածանքները գլխավորեց Բարսեղ Կեսարացին, որ շատ պարզ գիտակցում էր աղանդավորների վտանգավորությունը։ Նա 376 թ. իր նամակներից մեկում գրում էր. «Ահա տասներեքերորդ տարին է, ինչ հերետիկոսների կողմից մեր դեմ հալածանք է սկսվել, որի ընթացքում եկեղեցիներին ավելի վիշտ է պատճառվել, քան այն ժամանակվանից ի վեր, ինչ բարձրացված է Քրիստոսի ավետարանը»[9]։ Բարսեղի մահից (378 թ.) հետո աղանդավորների հարցը քննվում է Գանգրայի եկեղեցական ժողովում, որտեղ Եվստաթիոսը կարգալույծ է հայտարարվում։

Հայաստանում տարածված գնոստիկյան աղանդներից, ինչպես նշեցինք, հայտնի է նաև բորբորիտների աղանդը[10]։ Աղբյուրներում այս աղանդավորները կոչվում են նաև բարբելիոտներ, բորբորիանոսներ, զաքեոսներ, որոնք տարածված էին Ասորիքում (այստեղ նրանց կոչում էին նաև կոդդիանոսներ), Եգիպտոսում (ստրատիոտիկոսներ և ֆիբիոտներ)[11]։ Հայաստանում տարածված բորբորիտների աղանդի վերաբերյալ հայկական աղբյուրների տվյալները շատ աղքատիկ են և դրանց հիման վրա անհնարին է գաղափար կազմել բորբորիտների վարդապետած ուսմունքի մասին, հետևաբար անհրաժեշտ է դիմել վաղ քրիստոնեական օտար աղբյուրների տվյալներին, հիմնականում եկեղեցական հայրերի գործերին։

Բորբորիտների վաղագույն հիշատակությունը հանդիպում է II դարի եկեղեցական պատմիչ Իրինեոս Լուգդունացու «Ընդդէմ աղանդոց» աշխատության մեջ։ Աղանդապետ Վալենտինոսի վարդապետության քննադատության առնչությամբ՝ նա խոսում է գնոստիկյան աղանդների մասին և որպես առաջինը հիշատակում է «Բարբելիոտների, այն է՝ Բորբորյանների» աղանդը[12]։ Աղբյուրներում հանդիպում են նրանց հորջորջման տարբեր ձևեր, որոնք միջնադարյան հեղինակները յուրովի են մեկնաբանում։ Բորբորիտը բխեցնում են հունարեն «բորբորոս» բառից, որ տիղմ, կեղտ է նշանակում, բարբելիոտը՝ աղանդավորների գերագույն սրբության Բարբելո կնոջ անունից։ Այդ բացատրություններից և ոչ մեկը հիմնավորված չէ։ Ճշմարիտն այն է, որ բորբորիտ անունը հունական ծագում չունի[13]։ Բորբորիտների մասին խոսում է նաև V դա-

9 Նույն տեղում, էջ 39։

10 Անգլիացի հայագետ Ֆ. Կոնիբերը բորբորիտներին նեստորական է համարում։ Այդ տեսակետը հիմնավորապես քննադատեց Գ. Ֆնտգլյանը։ Տե՛ս Կորիւն, Վարք Մաշթոցի, ուղղեալ և լուսաբանեալ ի Գառնիկ Ֆնտգլեանէ, Երուսաղեմ, 1930, էջ ԻԳ, նաև՝ Ե. Գ. Տեր-Մինասյան, նշվ. աշխ., էջ 68։

11 Հայերեն «Գիրք հերձուածոց»-ում, որ անտարակույս Եպիփանից թարգմանություն է, ամենայն հավանականությամբ Հովհան Դամասկացու միջոցով, հանդիպում է և «Բարբարիանոս» աղանդը («Գիրք հերձուածոց», հրտ. Միաբանի, Վաղարշապատ, 1892, էջ 1), որը սխալմամբ նույնացնում են բորբորիտների աղանդի հետ (տե՛ս Ա. Տ. Մելիք-Բախշյան, Պավլիկյան շարժումը Հայաստանում, Երևան, 1953, էջ 55)։ Եպիփան Կիպրացին որոշակի տարբերում է այդ երկու աղանդները։ Ըստ Ե. Տեր-Մինասյանի, այդպիսի աղանդ գոյություն չի ունեցել (Ե. Գ. Տեր-Մինասյան, նշվ. աշխ., էջ 67)։

12 Sancti Irenaei, episcopi Lugdunensis et martyris, Detectionis et eversionis falco cognominatae agnitionis seu Contra haereses Libri quinque. Liber I, cap. XXIX, De variis Gnosticorum sectis, ac primo de Barbeliotis, seu Borborianis, Migne. Patrologia graeca, t. VII, col. 691—694; Գնոստիկյան գաղափարների մասին տե՛ս նույն տեղում, սյունակ 445 և հտ.։

13 Տե՛ս Կորիւն, Վարք Մաշթոցի, էջ ԻԳ։ Հ. Մելքոնյանի կարծիքով բորբորիտ անունը ասորերեն «բար բարիտն» է (անապատի որդի), և որ շարժումը առնչվում է անապատականների շարժման հետ (Հ. Գ. Մելքոնյան, Հայ-ասորական հարաբերությունների պատմությունից, Երևան, 1970, էջ 68)։ Ե. Տեր-Մինասյանը այդ բացատրությունը քիչ հավանական է համարում (Ե. Գ. Տեր-Մինասյան, նշվ. աշխ., էջ 67)։

րի եկեղեցական պատմիչ Թեոդորետոսը։ Իր հինգ գրքից բաղկացած աշխատության առաջին գրքում, 13-րդ աղանդը նա անվանում է այնպես, ինչպես Իրինեոսը՝ «Բարբելիոտների, այն է՝ բորբորիանոսների մասին»[14]։ Ըստ նրա՝ բորբորիտների գաղափարախոսությունը հենված է աղանդապետ Վալենտինոսի վարդապետության վրա։ Բայց հիշյալ աղանդավորների մասին ամենից հանգամանորեն գրել է նույնպես V դարի եկեղեցական պատմիչ Եպիփան Կիպրացին, իր «Ընդդէմ 80 աղանդոց» («Պանարիոն») խորագիրը կրող նշանավոր աշխատության մեջ[15]։ Եպիփան Կիպրացին նախազգուշացնում է իր ընթերցողներին, թե ինքը բորբորիտների դավանած բոլոր հայացքների մասին չի գրելու, դրանց մի մասը զանց է առնում, քանզի, իր ասելով, վախենում է հավատացյալներին օգուտ տալու փոխարեն վնաս հասցնել, հավանաբար, մտածելով, որ ընթերցողներին նման գաղափարները կարող են դուր գալ և նրանց ընդունելի դառնալ։

Բորբորիտների պատկերացմամբ մարդկային մարմինը ապականացու է, այն չի կարող հարություն առնել, այն այս աշխարհի արարչի՝ վիշապաձև արխոնի ստեղծագործությունն է։ Նրանց ասելով հոգի ունեն ոչ միայն մարդիկ, այլև կենդանիները, ձկներն ու սողունները, ծառերն ու տունկերը։ Քրիստոսը չի ծնվել Մարիամից, նա ինքնածին է (αὐτολόχευτος), մարմին չի ունեցել, նրա մարմինը երևակայական էր։ Ըստ բորբորիտների, գոյություն ունեն ներքևից հաշվված ութ երկինք, որոնցից յուրաքանչյուրի վրա բազմած են արխոններ։ Ութերորդ երկնքում գտնվում է Բարբելոն, կենդանի էակների մայրը (այստեղից՝ նրանց բարբելիոտներ հորջորջումը)։ Հայրն ամենացուն և ինքնածին Քրիստոսն է, որն աշխարհ եկավ և մարդկանց ցույց տվեց գնոսիսը։ Յոթերորդ երկնքում է գտնվում Բարբելոյի որդի՝ էշի կամ խոզի կերպարանք ունեցող արխոն Սաբաոթը (կամ՝ Յալդաբաոթը)՝ Տերը զորության, իրենից ցած գտնվող երկինքների և երկրի արարիչը։ Հոգին, հեռանալով երկրից, անցնում է այդ յոթ երկինքների վրա գտնվող արխոնների միջով և հասնելով Բարբելոյին, փրկվում է, ընդ որում նա կարող է անցնել այդ արխոնների միջով միայն այն ժամանակ, երբ այն լիանա գնոսիսով։ Գնոսիսին անտեղյակ հոգիները կուլ են գնում այս աշխարհի արխոնին՝ Սաբաոթին, ապա վերադառնում երկիր և մուտք գործում խոզերի և այլ կենդանիների մեջ։ Իսկ երբ լիացած են լինում գնոսիսով, ի զորու են անցնել այդ արխոնների միջով, գալ Սաբաոթի մոտ, կոխել նրա գլխին, անցնել «վերին կողմը», որտեղ գտնվում է «կենդանի էակների մայր» Բարբելոն։ Ահա այդ կերպ է փրկվում հոգին։

Բորբորիտները «սուրբ» գրքերից ընդունում էին Հին և Նոր կտակարանները, որոնք մեկնաբանում էին յուրովի[16], բայց ունեին և բազմաթիվ պարականոն գրքեր, ավետարաններ։ Նրանք անարգում, չէին ընդունում մարգարեներին, նրանց պաշտած սատծուն[17], չէին հավատում վերջին դատաստանին, հարության ի մեռելոց[18]։ Եպիփան Կիպրացու ասելով, բորբորիտները չէին հրաժարվում մսակերությունից ու գինու գործածությունից, դեմ էին ծոմապահությանը։ Ինչպես դա ընդունված է «ուղղափառ» հեղինակների համար, նրանք աղանդավորներին մեղադրում էին սեռական սանձարձակության, կա-

[14] Beati Theodoreti episcopi Cyri, Haereticarum compendium, Liber I, cap. 13: Περὶ Βαρβηλιωτῶν ἤγουν Βορβοριανῶν, Migne, Patrologia graeca, t. LXXXIII, col. 361—364.

[15] S. P. N. Epiphanii Constantiae quae in Cypro episcopi, Adversus octoginta haereses, Opus quod inscribitur Panarium sive arcula. Migne, Patrologia graeca, t. XLI, col. 329—377: Այս աշխատությունը հավանաբար թարգմանվել է հայերեն, որից առանձին հատվածներ են պահպանվել։ Տե՛ս Գ. Զարբհանալյան, Հայկական թարգմանութիւնք նախնյաց, Վենետիկ, 1889, էջ 418, նաև՝ «Գիրք հերձուածոց»։

[16] Epiphanii, նշվ. աշխ., սյունակ 340։

[17] Նույն տեղում, սյունակ 349, 356։

[18] Նույն տեղում, սյունակ 356։

նանց՝ նրանց շրջանում ընդհանուրին պատկանելու մեջ[19]։ Ահա համառոտ գծերով բորբորիտների դավանած գաղափարների մասին։

Այդ շարժումը մուտք էր գործել նաև Հայաստան[20], ավելի ճիշտ՝ բյուզանդական տիրապետության տակ գտնվող Արևմտյան Հայաստան, ինչպես և Ասորիք (այստեղ նրանց անվանում էին Բարբուրյանե)։ Բորբորիտների՝ Հայաստանում տարածված լինելու մասին առաջին հավաստի տեղեկությունները հաղորդում է Կորյունն իր «Վարք Մաշտոցի» աշխատության մեջ[21]։ Նա ցույց է տալիս, որ Մեսրոպ Մաշտոցը «...ձեռն արկանէր զդժպատեհ և զկամակոր բարբարիանոս աղանդն քննելոյ։ Եւ իբրև ոչինչ գտանէր հնարս յուղղութիւն ածելոյ, առեալ ի գործ արկանէր զթշուառացուցիչ գաւազանն, ծանրագոյն պատուհասիւք ի բանդս, ի տանջանս, ի գելարանս։ Իսկ յորժամ այնու ևս պակասեալք ի փրկութենէն գտանէին, խորտակեալս, ապա խանձեալս, մրեալս և գունակ գունակ խայտառակեալս, և յաշխարհէն կորզէին»[22]։ Այս փաստը վկայում է, որ բորբորիտները Հայաստանում նոր չէ, որ հանդես էին եկել, նրանք այստեղ բավականին գործունեություն էին ծավալել, իրենց կողմը գրավել զգալի թվով հետևորդներ, որը և պատճառ էր դարձել նրանց դեմ եկեղեցու և իշխանությունների կտրուկ միջոցառումների։ Պետք է նշել նաև, որ Մեսրոպ Մաշտոցի կողմից աղանդավորների դեմ ձեռնարկած հալածանքները (դրանք թվագրվում են 415—423 թթ.) չէին կապված միայն հայ եկեղեցու նախաձեռնության հետ։ Մովսես Խորենացուց հայտնի է, որ այդ բանը տեղի ունեցավ Կոստանդնուպոլսի պատրիարք Ատտիկոսի (405—425 թթ.)՝ հայոց կաթողիկոս Սահակ Պարթևի առաջ դրած պահանջի հետ։ Հարցն այն է, որ Հայաստանի բաժանումից հետո, Արևմտյան՝ բյուզանդական Հայաստանում քարոզչական ու վարդապետական գործունեություն ծավալելու, դպրոցներ բացելու և հայոց լեզուն դասավանդելու համար անհրաժեշտ էր բյուզանդական իշխանությունների թույլտվությունը, իսկ այն կապված էր հայոց հոգևոր ու աշխարհիկ իշխանություններին ներկայացվող որոշակի պահանջների հետ։ Պատրիարք Ատտիկոսը գրում էր Սահակ կաթողիկոսին. «Իսկ արդ՝ հրամանաւ ինքնակալին Աւգոստոսի (Թեոդոս Բ կայսեր—Հ. Բ.) տուեալ լիցի քեզ իշխանութիւն վարդապետել զկողմդ մեր (այսինքն՝ Արևմտյան Հայաստանում—Հ. Բ.) և աղանդոյդ բորբորիտոնաց՝ կամ հաւանեցուցանել, կամ հալածել ի քումմէ վիճակէդ»[23]։

Մեսրոպ Մաշտոցը լծվում է բորբորիտներին «դարձի բերելու» գործին. այդ հարցում նրան օժանդակում էին աշխարհիկ իշխանությունները ի դեմս

---

19 Այդ մեղադրանքին կարելի է հանդիպել և հայկական աղբյուրներում։ Մովսես Խորենացին, օրինակ, Շամիրամի մասին գրում է. «վաւաշն այն և բորբորիտոնն Շամիրամ» (Ա, 15), որտեղ աղանդավորների անվանումը վերածվել է ածականի։

20 Բորբորիտների շարժման մասին Հայաստանում գրել են բազմաթիվ հայ հեղինակներ, որոնցից հիշատակելի են. Կ. Տեր-Մկրտչյան, Պավլիկյանք Բյուզանդական կայսրության մեջ..., էջ 62—63, Լ. Խաչիկյան, նշվ. աշխ., էջ 81—83, Ս. Տ. Մելիք-Բախշյան, նշվ. աշխ., էջ 55—64, Ե. Գ. Տեր-Մինասյան, նշվ. աշխ., էջ 63—73, Հ. Գ. Մելքոնյան, նշվ. աշխ., էջ 68—69։

21 Արտահայտվել է կարծիք, որի համաձայն Մեսրոպ Մաշտոցի՝ Գողթան գավառում արմատախիլ արած հեթանոսական աղանդը (Մովսես Խորենացի, Գ, 60) հենց բորբորիտներինն է եղել (Moïse de Khorène, Histoire d'Arménie. In: Colection des historiens anciens et modernes de l'Arménie, publiée en français... par V. Langlois, t. II, Paris, 1869, p. 158, № 6): Այդ կարծիքը իրավամբ քննադատության է ենթարկվել. տե՛ս Կ. Տեր-Մկրտչյան, Պավլիկյանք Բյուզանդական կայսրության մեջ..., էջ 62—63։

22 Կորյուն, Վարք Մաշտոցի, բնագիրը, ձեռագրական այլ ընթերցվածներով, թարգմանությամբ, առաջաբանով և ծանոթություններով ի ձեռն պրոֆ. դ-ր Մանուկ Աբեղյանի, Երևան, 1941, էջ 68։

23 Մովսես Խորենացի, Գ, 57։

ստրատելատ Վարդան Մամիկոնյանի եղբայրներ Հմայակի և Համազասպյանի, Սահակ կաթողիկոսի թոռների։ Մեսրոպ Մաշտոցը հրամայում է քննության ենթարկել «ժանտագործ բորբորիտներին», կարգադրելով, «եթէ ոչ հեզութեամբ և ոչ սաստիւ գայցեն յուղղութիւն՝ չարչարանօք հալածել»[24]։ Մեսրոպ Մաշտոցի գործադրած միջոցները հավանաբար հաջողություն ունենում են, քանզի բորբորիտները աղբյուրներում այլևս չեն հիշատակվում, թեև բացառված չէ, որ նրանք սկսեցին հանդես գալ այլ աղանդավորների (հավանաբար՝ մծղնյաների) անվան տակ, որոնց մեջ և ձուլված պիտի լինեն[25], որովհետև այդ շրջանում Հայաստանում լայնորեն տարածված էր նաև մծղնե աղանդը։ Աղանդի Մծղնե անունը վկայում է, որ տվյալ շարժումը Հայաստան մուտք է գործել Ասորիքից, քանի որ հիշյալ բառը ասորերեն է և նշանակում է «աղոթող»։ Այդ աղանդը բյուզանդական (և արևմտյան) աղբյուրներում հայտնի է մեսալյան (մասալյան) անունով։ Հույն հեղինակները շատ լավ գիտեին աղանդի ասորերեն անվան նշանակությունը և հաճախ իրենք էլ աղանդավորներին կոչում են «Եվքիտներ», որ հունարեն աղոթողներ է նշանակում։ Ինչպես բորբորիտների, այնպես էլ մծղնյաների դեպքում, հայկական աղբյուրների տվյալները հնարավորություն չեն տալիս գաղափար կազմելու նրանց վարդապետության վերաբերյալ, ուստի դիմում ենք բյուզանդական աղբյուրների օգնությանը։

Մծղնյաների մասին ավելի վաղ տեղեկություն հայտնող հեղինակը Եպիփան Կիպրացին է[26]։ Նա հիշյալ աղանդավորների հանդես գալը թվագրում է Կոստանդիոս կայսեր ժամանակով (351—361 թթ.)։ Պատմիչը ցույց է տալիս, որ աղանդը ծագել է Միջագետքում, որտեղից նրա հետևորդները գաղթել են Անտիոք։ Եպիփան Կիպրացին զանազանում է մեսալյան աղանդավորների երկու շարժում՝ հեթանոս մեսալյաններ և քրիստոնյա մեսալյաններ։ Առաջինները, թեև հեթանոս էին, դավանում էին միաստվածություն (այդ աստծուն նրանք անվանում էին Ամենակալ), իսկ քրիստոնյա մեսալյանները, գիտակցելով սատանայի մեծությունն ու զորությունը, համամիտ էին նրան երկրպագել՝ շահելու համար նրա բարյացակամությունը և խուսափելու նրա գործած վատությունններից։ Նրանք, իբրև թե այն պատճառով, իրենց անվանում էին սատանյաններ[27]։ Եպիփանի ասելով, մեսալյանները հրաժարվում էին սեփականությունից, թողնում, հեռանում էին իրենց բնակատեղիներից և ապրում մուրացկանությամբ։ Նրանք մերժում էին ծոմապահությունը և մշտապես աղոթում էին։ Եզնիկ Կողբացու ասելով՝ նրանք մերժում էին նաև ամուսնությունը. «...զամուսնութիւնն տուեալ յԱստուծոյ՝ պղծութիւն համարէին, որպէս Մարկիոնն և Մանի և մծղնեայք»[28]։

Մեսալյանների մասին գրել է և Թեոդորետոսը։ Նրանց հանդես գալը նա թվագրում է Վալենտինիանոս (364—375 թթ.) և Վաղես (364—378 թթ.) կայսրերի իշխանության շրջանով։ Նա ցույց է տալիս, որ հիշյալ աղանդավորները կոչվել են նաև «էնթուսիաստներ», քանզի ընկնելով ինչ-որ դևի ազդեցության տակ, կարծում էին, թե իրենց մեջ սուրբ հոգին է մուտք գործել և այդ պատճառով ընկել են էքստազի մեջ, որը և «էնթուսիազմոս» են անվանել։ Թեոդորետոսի տվյալներով, մեսալյանների վարդապետության համաձայն, մարդ ծննդյան օրից իր հոգում կրում է դևին, որին հնարավոր է դուրս մղել

---

24 Նույն տեղում, Գ, 58։

25 Մծղնյաների մասին Հայաստանում տե՛ս Կ. Տեր-Մկրտչյան, Մծղնեից աղանդը («Արարատ», 1895 թ., հունվար, էջ 3—8), նույնի, Պավղիկյանք Բյուզանդական կայսրության մեջ..., էջ 65—76, Ս. Տ. Մելիք-Բախշյան, նշվ. աշխ., էջ 64—79, Ե. Գ. Տեր-Մինասյան, նշվ. աշխ., էջ 73—85։

26 Epiphanii Adversus octoginta haereses, Migne, Patrologia graeca, t. XLII, col. 756—774.

27 Նույն տեղում, սյունակ 760։

28 «Եզնկայ Կողբացւոյ Բագրևանդայ եպիսկոպոսի Եղծ աղանդոց», Վենետիկ, 1826, էջ 287։

միայն աղոթքով։ Պատմիչը տալիս է և այլ կարևոր մանրամասնություններ։ Նա վկայում է, որ Անտիոքի պատրիարք Փլավիանոսը (381—404 թթ.), տեղեկանալով աղանդավորների՝ Եդեսիայում տարածված լինելու մասին, վանականների մի խումբ է ուղարկել այնտեղ, բերել տվել նրանց Անտիոք և ջանացել «դարձի բերել»։ Նրա բանակցությունները ծերունի աղանդապետ Ադելփիոսի հետ հաջողություն չեն ունեցել, և պատրիարքը աղանդավորներին Անտիոքից արտաքսել է։ Մեսալյանները եկել են Պամփյուլիա, որտեղ և տարածել են իրենց վարդապետությունը[29]։ Թեոդորետոսը տալիս է մեսալյան աղանդապետների անվանացանկը՝ Սաբբաս, Ադելփիոս, Դաոդես (կամ Դադոես), Սիմեոն, Հերմաս և ուրիշներ։ Կարևոր է նշել, որ Թեոդորետոսի ասելով, մեսալյանների դեմ գրել են Մելիտենեի եպիսկոպոս Լետոյիոսը և Իկոնիոնի եպիսկոպոս Ամփիլոքիոսը[30]։ Այս հանգամանքը անուղղակի վկայում է, որ մեսալյան աղանդը տարածված է եղել նաև այդ քաղաքներում։

Մեսալյանների մասին ավելի մանրամասն գրել է Հովհան Դամասկացին, ընդ որում նա ցույց է տալիս, որ իր շարադրանքը վերցված է իրենց՝ մեսալյանների գրքերից[31]։ Ըստ մեսալյանների, գրում է հիշյալ հեղինակը, մարդու մեջ ամուր նստած է սուրբ հոգին, բայց և սատանան, որ վերջինս և դևերը տիրում են մարդու մտքին ու բնությանը։ Մարդու հոգին չեն մաքրում ոչ մկրտությունը, ոչ էլ հաղորդությունը, այլ միայն աղոթքը, որին հսկայական ուժ էին վերագրում։ Հովհան Դամասկացին ցույց է տալիս, որ մեսալյանները մերժում են եկեղեցին, ընդունելով միայն իրենց աղոթարանները և խորշում են ֆիզիկական աշխատանքից։ Նույն հեղինակի շարադրանքում շատ կարևոր է այն միտքը, որ մեսալյան աղանդավորները «մեծ սիրով ընդունում են իրենց տերերից փախած ստրուկներին, ինչպես և հանցագործներին»[32]։ Այս հանգամանքը վկայում է մեսալյանների՝ հասարակության ստորին, շահագործվող խավերին պատկանելու, հետևաբար և նրանց շարժման դասակարգային բնույթ ունենալու մասին։ Սա էր պատճառներից մեկը, որ դեռևս 431 թ. Եփեսոսի ժողովը հանդես եկավ մեսալյանների դեմ։ Հետագայում նրանց հալածանքի ենթարկեց անգամ նեստորական եկեղեցին[33]։

Մծղնյաների (մեսալյանների)՝ Հայաստանում տարածված լինելու մասին հիմնական աղբյուրը Շահապիվանի (447 թ.) ժողովի կանոններն են, որոնցից հստակ երևում է, որ շարժումը Մեսրոպ Մաշտոցի և Սահակ կաթողիկոսի մահից հետո լայն թափ էր ստացել և զգալի վտանգ էր ներկայացնում աշխարհիկ և հոգևոր տերերի համար։ Հիշյալ ժողովի 19-րդ կանոնը[34] վկայում է, որ մծղնե ուսմունքը տարածված էր ոչ միայն աշխարհականների շրջանում, այլև հոգևորականների։ Եթե նկատի ունենանք աղանդին հարած հոգևորականների աստիճանը (երեց, սարկավագ, աբեղա), ապա դժվար չէ եզրակացնել, որ այն տարածված էր ստորին հոգևորականության շարքերում, մի բան, որ անուղղակիորեն վկայում է աղանդի հետևորդների սոցիալական ցածր դասին պատկանելու մասին։ Եկեղեցական հիշյալ ժողովում աղանդավորների դեմ սահմանված պատիժները բավականին խիստ էին։ Աղանդավոր հոգևորականները կար-

---

[29] Theodoreti episcopi Cyrensis, Haereticarum fabularum Compendium, Migne, Patrologia graeca, t. LXXXIII, col. 432. Համմ. Joannis Damasceni, De haeresibus liber, Migne, Patrologia graeca, t. XCIV, col. 737.

[30] Համմ. Joannis Damasceni De haeresibus liber, col. 736.

[31] Նույն տեղում, սյունակ 729։

[32] Նույն տեղում, սյունակ 733։

[33] Mansi, Sacrorum Conciliorum nova et amplissima collectio, t. IV p. 1477: „Definitio sanctae et oecumenicae synodi Ephesinae contra impios Messalianitas, qui et Euchetae et Enthusiastae quoque appelantur"; Տե՛ս Ե. Գ. Տեր-Մինասյան, նշվ. աշխ., էջ 77 և հտ.։

[34] «Կանոնագիրք հայոց», հ. Ա, աշխատասիրությամբ Վազգեն Հակոբյանի, Երևան, 1964, էջ 461—462։

գալուստ էին հայտարարվում, նրանց ճակատին աղվեսադրոշմ էին դնում և վանքում արգելափակում։ Եթե աղանդավոր հոգևորականը այդ բոլորից հետո դարձի չէր գալիս, ապա իշխանությունները դիմում էին մարմնական խիստ պատիժների, որից հետո մեղանչածին գողենոց էին նետում։ Ավելի ծանր էին աշխարհիկ աղանդավորների նկատմամբ կիրառված միջոցները։ Նրանց իսկույն մարմնական պատիժների էին ենթարկում, ճակատին աղվեսադրոշմ խարանում և գողենոց նետում։ Ինչ վերաբերում է նրանց անչափահաս երեխաներին, ապա նրանք իրենց ծնողներից հեռացվում էին և տրվում հոգևորականների դաստիարակությանը[35]։ Շահապիվանի ժողովի 20-րդ կանոնը ուղղված էր աղանդավորներին հովանավորելու, թաքցնելու և իշխանություններին չհանձնելու մեջ մեղադրվող կրտսեր հոգևորականության դեմ[36]։ Այդ կանոնից երևում է նաև, որ նույն մեղքի մեջ մեղադրվում էին նաև եպիսկոպոսներ։

Մծղնյա շարժումը Հայաստանում ավելի խոր հետք թողեց, քան աղանդավորական մյուս շարժումները[37]։ Պատահական չէ, որ Հովհան Օձնեցին VIII դարի սկզբում գրած իր «Ընդդէմ պաւղիկեանց» հայտնի գործում պավլիկյաններին որակում է որպես «նախկին մծղնէութեան խաշերանք»[38] (մնացորդ)։ Մծղնե շարժման հորջորջումը ստացավ «աղանդավոր», «հերձվածող», անգամ «պիղծ» նշանակություն։ Նույն Հովհան Օձնեցին հերձվածող բառի փոխարեն օգտագործում է «մծղնե» բառը։ Պավլիկյանների առթիվ նա գրում է. «Ոչ է սպարտ ի չարաղանդ մծղնէիցն տեղիս, որ կոչին Պօլիկեանք օթել ումեք...»[39]։ XI դարի հեղինակ Արիստակես Լաստիվերտցին նույն բանն է ասում Թոնդրակեցիների առնչությամբ. «Բայց զնոցա (Թոնդրակեցիների—Հ. Բ.) մծղնէ զգործն անպատշաճ համարեցաք ընդ դրով արկանել»[40]։ XIII—XIV դդ. հեղինակ Կիրակոս Երզնկացին գրում է. «Մծղնագործութիւն, որ առաւել է քան զամենայն մեղս»[41]։

Մծղնյաները (մեսալյանները) շատ երկար գոյություն ունեցան։ Նրանք հավանաբար պավլիկյանների հետ VIII դարում, գուցե և ավելի ուշ, գաղթեցվեցին Թրակիա, հատկապես Ֆիլիպպուպոլիս քաղաքը։ Եվթիմիոս Զիգաբենոսը նրանց նույնացնում է բոգոմիլների և Թոնդրակեցիների հետ[42]։

IV—V դարերի աղանդավորական շարժումների առնչությամբ պետք է նշել նաև III դարում Միջագետքում բռնկված մանիքեցիների հուժկու շարժման մասին[43]։ Նրա հիմնադիրն ու գաղափարախոսը Մանին էր։ Մանիքեությունը

---

35 Նույն տեղում, էջ 462։

36 Նույն տեղում, էջ 462—466։

37 Նույն տեղում, էջ 534։

38 Յովհաննէս Իմաստասէր Օձնեցի, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1833, էջ 39։

39 Եթե ուզում էին մեկին քաղաքական մեղադրանք ներկայացնել, նրան ամբաստանում էին մծղնեությանը հարած լինելու մեջ։ Ղազար Փարպեցուն անգամ մեղադրում էին, որ նա իբր ասել է, թե «պոռնկութիւնք մեղք չեն» («Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1914, էջ 190), այսինքն նրան մեղադրում էին նախնական մեղսագործությունը մերժող մծղնե գաղափարներ գավանելու մեջ (տե՛ս Կ. Տեր-Մկրտչյան, Պավլիկյանք Բյուզանդական կայսրության մեջ..., էջ 74)։

40 «Պատմութիւն Արիստակիսի Լաստիվերտցւոյ», աշխատասիրությամբ Կ. Ն. Յուզբաշյանի, Երևան, 1963, էջ 133։

41 Համտ. «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի», հ. Բ («մծղնագործութիւն» բառը)։

42 Euthymii Zigabeni Confutatio et eversio impiae et multiplicis exsecrabilium Massalianorum sectae, qui et Phundaitae et Bogomili..., Migne, Patrologia graeca, t. CXXXI, col. 41.

43 Մանիքեցիների մասին տե՛ս А. Кац, Манихейство в Римской империи по данным Acta Archelai («Вестник древней истории», 1955, № 3); М. М. Дьяконов, Очерк истории древнего Ирана, М., 1961; H.-Ch. Puech, Le Manichéisme, son fondateur, sa doctrine, Paris, 1949; O. Klima, Manis Zeit und Leben, Prag, 1962; Ն. Գ. Տեր-Մինասյան, Նշվ. աշխ., էջ 91—106։

*տարածվեց Իրանի հյուսիսային նահանգներում՝ Ատրպատականում, ապա Միջին Ասիայում, Հնդկաստանում ու Չինաստանում, նաև Հռոմեական կայսրության արևելյան նահանգներում։ Մանիքեցիներն ընդունում էին լույսի ու խավարի, բարի և չար աստվածների գոյությունը, նրանց միջև առկա անվերջ պայքարի մասին ուսմունքը։ Չարը կապելով նյութականի, իսկ բարին լույսի հետ, նրանք աշխարհը դիտում էին որպես չարի մարմնավորում և մարդկային մարմինը ևս համարում էին չարի արարչություն, մերժում նրա՝ հարությունն ի մեռելոց։ Ըստ նրանց, մարդու հոգու մեջ պարփակված են լույսի մասնիկներ, որոնց փրկության համար անհրաժեշտ է ծայրահեղ ասկետիզմ։ Չար համարելով նախ և առաջ սոցիալական ու գույքային անհավասարությունը, մանիքեցիները պայքարում էին այդ անհավասարության դեմ, մի բան, որ նրանց դեմ հանեց աշխարհիկ ու հոգևոր իշխանություններին։ Սկսվեցին դաժան հալածանքները աղանդավորների դեմ։ Ինքը՝ Մանին, պարսից արքա Վռամ I-ի կողմից բանտ նետվեց, որտեղ և վախճանվեց 277 թ.։ Բայց շարժումը հնարավոր չեղավ կասեցնել։ Այն իր գոյությունը պահպանեց բազում դարեր, այդ թվում և Բյուզանդական կայսրության սահմաններում։ «Մանիքեցի» հորջորջումը դարձավ անգամ հայհոյանք, և քաղաքական հակառակորդները միմյանց մանիքեության մեջ էին ամբաստանում։*

*Թեև ապացույց չկա մանիքեական շարժման՝ Հայաստանում տարածված լինելու մասին, սակայն նրա գաղափարներն, անկասկած, այստեղ օտարոտի չէին։*

*Գնոստիկյան հիշյալ աղանդների՝ բորբորիտների, մծղնյաների և մանիքեցիների ուսմունքը հետագայում որոշակի ազդեցություն ունեցավ Հայաստանում և Բյուզանդիայում ծագած աղանդավորական այլ շարժումների, հատկապես պավլիկյանների և թոնդրակեցիների գաղափարախոսության ձևավորման վրա։ Պատահական չէ, օրինակ, որ Փոտ պատրիարքը պավլիկյանների դեմ ուղղված իր աշխատությունը վերնագրել է «Մանիքեցիների վերածնման մասին»։ Նա պավլիկյան աղանդը համարում է մանիքեական աղանդի պարզ վերանորոգումը։ Այդպես էին գտնում բյուզանդական այլ, ինչպես և միջնադարյան հայ հեղինակներ, որոնք հաճախ պավլիկյաններին մանիքեցիներ էին անվանում, այն ժամանակ, երբ մանիքեական շարժումը վաղուց էր դադարել գոյություն ունենալուց։ Գրիգոր Մագիստրոսն, օրինակ, թոնդրակեցիներին համարում է մանիքեցիներ[44], կամ վերջիններիս աշակերտները («որք ի մանիքեցւոցն ուսեալք անուանելոցն Թոնդրակեցիք»)[45]։*

## ЕРЕТИЧЕСКИЕ ДВИЖЕНИЯ В АРМЕНИИ СОГЛАСНО СРЕДНЕВЕКОВЫМ АРМЯНСКИМ И ИНОСТРАННЫМ АВТОРАМ (IV—V вв.)

РАЧ БАРТИКЯН

### Резюме

Христианство, возникшее как социальный протест угнетенных масс Римской империи и входивших в ее состав сопредельных стран, в том числе и Армении, со временем потеряло свою первоначальную сущность, превратившись в государственную религию. С этого времени все течения в новой религии, догматы которых отличались от официально принятых, церковь стала считать ересью, их сторонники прес-

---

44 *«Գրիգոր Մագիստրոսի թղթերը», Ալեքսանդրապոլ, 1910, էջ 65, նաև էջ 164։*

45 *Նույն տեղում, էջ 168։*

ледовались, поскольку классовая борьба низших слоев общества уже стала развертываться под видом этих ересей.

В эпоху раннего христианства еретические движения известны как гностические. В основе их идеологии лежал богословский дуализм—идея о существовании двух богов, бога небесного и бога творца всего видимого (сатаны). Эти ереси были распространены главным образом в Сирии, Египте, в пределах Римской империи, откуда проникли и в Армению. Византийскую и армянскую церковь в данную эпоху больше всего беспокоили ереси мессалиан и борборитов, а также движение пустынников, возглавляемое Севастийским епископом Евстафием. Церкви удалось искоренить эти движения еретиков, но их догматы оказались весьма жизнеспособными: они легли в основу идеологии возникшего в будущем движения павликиан, откуда и проникли в идеологию тондракитов и богомилов.